# Ազատութեան համար

Որքա՜ն չքնաղ եւ դիւթիչ է բառը եւ սիրելի ու պաշտելի ամէնուս :

Ամէն անհատի, ամէն ընտանիքի ու ազգի մէջ փնտռուած ու գնահատելի, բայց եւ այնքան սուղ եւ դժուար, երբ կը փորձեն ձեռք բերել:

Ո՞վ չուզեր իր տան մէջ, իր երդիքին տակ, իր գործին մէջ, նոյնիսկ իր կենակցութեան մէջ ըլլալ ինքնիշխան, առանց արտաքին միջամտութեան :

Ազատութեան սէրը բնածին է մարդուս մէջ եւ կը սկսի օրօրոցէն: Երբ երեխայ է, կարծես կը զգայ թէ իր ծնողքին յանդիմանութիւնը ծանր կու գայ եւ հետզհետէ աճելով իր մէջ, իրեն հետ, երբ քիչ մըն ալ մեծնայ, կարծես բեռ մը կ'ըլլայ իրեն մեծերուն հսկողութիւնը ու օր առաջ կ'ուզէ ազատիլ ու հեռանալ, դառնալ ինքնագլուխ ...

Եթէ այդպէս է պահանջքը ներքին կարգուսարքին մէջ, ո՞ւր կը մնայ ազգերու, ժողովուրդներու կեանքին մէջ, ուր երբ ազատութիւնը կը կապտուի, ծայր կու տան եւ վէճ եւ կռիւ: Ազատութեան յարգը այն ատեն կը գիտնանք, երբ կը գտնուինք օտարի ձեռքի, օտարի լուծին տակ:

Ի՞նչպէս կ'ուզէք որ աշխարհի մէջ խաղաղութիւն ըլլայ, հաշտութիւն ըլլայ, երբ մէկ ազգը կ'ուզէ ճնշել միւսին վրայ, ոտքի տակ առնել անոր իրաւունքները, մէկ բառով՝ ստրուկ ու գերի, միշտ իրեն ենթակայ, հարկատու ու հնազանդ պահել :

Հայ ժողովուրդը մէկն է եղած այն ազգերէն, որ սկիզբէն ի վեր ուզած է թօթափել օտարին լուծը, օտարի շղթան: Ան հազարաւոր հերոսներ ունեցած է ժողովուրդի ծոցէն, անոր տառապանքովը մկրտուած ու խմորուած, քաջեր որոնք զգալով լուծին ծանրութիւնը ու դառնութիւնը, զոհած են իրենց կանանչ արիւնը, իրենց կարճ կեանքերը ի սպաս ազատագրութեան :

Մեր ժողովուրդը դարերով մարտնչեր է, միայն իր արդար իրաւունքներուն ու պահանջին համար, բողոքեր, ընդվզեր եւ յաճախ բռունցք է բարձրացուցեր:

Վարդանանց մեծ պատերազմէն ի վեր, ուր կրօնի ազատագրութեան հարցին հետ անբաժան ազգային գոյութեան հարցն էր վտանգուած, միշտ պայքարի մէջ է եղած հայ ժողովուրդը:

Պայքա՜ր, շարունակ պայքա՜ր, ըլլայ գրչով թէ լեզուով, խաչով ու զէնքով, երբեմն յաղթող, երբեմն պարտուած, բայց միշտ պատնէշին վրայ, իր պատիւովը ու փառքով :

Այսպէս խոշտանգուած ու չարչարուած Հայաստանն իր արի զաւակներով անգամ մը եւս իյնալով նոր ժամանակի երկու պատերազմներու մէջ, այսօր ամենայն իրաւամբ կը սպասէ իր այնքան զոհողութեանց արդար հատուցումին, ըսելով թէ աշխարհի ազատութեան համար ինկանք, ազատութեան համար կ'ուզենք ապրիլ :

Ալ կը բաւէ որքան ուրիշներ օրօրեցին մեզ եւ քնացուցին, խաբեցին եւ մեր արիւնով ապրեցան ու վայելեցին: Այժմ թողէք որ մենք ալ ազատ շունչ քաշենք, մեր հայրենիքին արեւուն տակ, ծառայելով մարդկութեան եւ ազատութեան:

ՄԷՆ-ՍԷ

---

...նորդներու եւ մասնագէտներու աշխատանքի արդիւնքին: Յետոյ նորէն Լոնտոն պիտի գան, վերջնական խորհրդակցութիւններ կատարելու եւ որոշումներ տալու համար: Այնուհետեւ հետզհետէ պիտի յայտնուին հաշտութեան զանազան դաշնագիրները: Օրակարգի կնճռոտ խնդիրներուն մէջ կը գտնուին նաեւ ռումանականը, պուլկարականը եւ յունականը :

## ՏԱՐՏԱՆԷԼԻ ԹՆՃՈՒԿԸ

Ամերիկեան աղբիւրէ կը հաւաստեն թէ ժողովը հաւանաբար պիտի զբաղի Եւրոպայի ուտեստի, ածուխի, փոխադրութեան խնդիրներով, ինչպէս եւ ջուրի ճամբաները միջազգայնացնելու հարցով:

Անդարայէն անգլ. գործակալութեան հասած հեռագրի մը համաձայն, նախագահ Թրումըն Թուրքիոյ արտաքին նախարարութեան հաղորդած է իր ծրագիրը, Տարտանէլի միջազգայնացման մասին: Այս խնդիրն ալ ծանրակշիռ հանգամանք ունի, քանի որ Մոսկուա կր ճնշէ Թուրքիոյ վրայ, վերաքննելու համար Նեղուցներու պայմանագիրը: Նոյն հեռագրին համաձայն, Մ. Նահանգներու նախագահին ծրագիրը «լաւ տպաւորութիւն գործած է» Թուրքիոյ պաշտօնական շրջանակներուն մէջ: Անգլիա պաշտօնապէս բան մը յայտնած չէ այդ ծրագրի մասին, բայց կը հաւաստեն թէ կառավարութիւնը ընդհանրապէս համաձայն է Եւրոպայի ջուրի ճամբաները միջազգայնացնելու գաղափարին :

╳ Պաշտօնական զեկոյցին համաձայն, Հինգ նախարարներու խորհուրդին պաշտօնն է «շարունակել անհրաժեշտ նախապատրաստական աշխատանքը խաղաղութեան շրջանի կարգադրութեանց համար եւ քննել այն բոլոր նիւթերը որ կրնան իրեն ներկայացուիլ ատեն ատեն, խորհուրդին անդամներուն հաւաքական համաձայնութեամբ» :

## Ճափոնի նախկին վարչապետը անձնասպանութիւն փորձեց

Զօր. Թոժօ, Ճափոնի նախկին վարչապետը, — այն որ հրաման տուած էր յարձակիլ Փըրլ Հարպըրի վրայ, 1941 դեկտ. 7ին, փորձեց անձնասպան ըլլալ, երբ ամերիկացի սպաներ իր ապարանքը ներկայացան, ձերբակալելու համար, իբրեւ պատերազմի ոճրագործ: Զօրավարը փոխանակ սուրով փորը ճեղքելու (հարա քիրի), ատրճանակ մը պարպեց կուրծքին, սրտին տակ, բայց չմեռաւ: Ամերիկացի բժիշկներ ամէն միջոց կը փորձեն, որպէսզի ապրի: Նոյն իսկ ամերիկեան արիւն ներարկեցին: Վիրաւորին վիճակը անորոշ է տակաւին, բժիշկները 50—55 առ հարիւր յոյս ունին կեանքը փրկելու:

Երբ ամերիկացի սպաները ապարանքին դուռը զարկին, նախկին վարչապետը պատուհան մը բանալով գոչեց.— «Ես Թոժօն եմ»: Սպաները տակաւին ներս չէին մտած, երբ ատրճանակի ձայն մը լսուեցաւ: Սպասաւորներէն մէկը սենեակը մտաւ եւ սկսաւ բարձրաձայն հեծկլտալ: Ուրիշ երկու Ճափոնցիներ ծունկի եկած կ'աղօթէին :

Թոքիոյի անթելը կը ծանուցանէ թէ Թոժօ հետեւեալ յայտարարութիւնն ըրած է ատրճանակը պարպելէ վերջ:

— «Կը ցաւիմ Մեծագոյն Ասիոյ ժողովուրդներուն համար: Ուսերուս վրայ կ'առնեմ ամբողջ պատասխանատուութիւնը: Մեծագոյն Ասիոյ պատերազմը արդար էր: Մեր բոլոր ուժերն սպառած ըլլալով, ի վերջոյ պարտուեցանք: Ես չէի ուզեր յաղթականներուն առջեւ դատուիլ իբրեւ պատերազմի ոճրագործ: Կ'ուզէի անձնասպան ըլլալ մէկ հարուածով: Նախ մտածեցի սուրս գործածել, բայց նախընտրեցի ատրճանակը, վախնալով որ կը վրիպիմ եւ ողջ կը մնամ» :

Զօր. Թոժօ ճափոնական բանակին մէջ ծանօթ էր իբրեւ «Ածելի», իր կտրուկ որոշումներուն եւ վճռական կարգադրութեանց համար:

╳ Ճափոնի ամերիկեան բանակին սպարապետութիւնը հրամանագրով մը կ'արգիլէ զինուորներուն մտերմանալ Ճափոնցիներուն հետ, կայսերական պալատը կամ որ եւ է մեհեան մտնել, մասնաւոր տուներ, պանդոկներ կամ զբօսարաններ այցելել: Անսաստողները խստիւ պիտի պատժուին :

╳ Ճափոնի պողպատի ընկերակցութեան անդամները արտօնութիւն խնդրեցին տարեկան առնուազն 3 միլիոն թոն պողպատ արտադրելու, որպէսզի գոնէ երկու միլիոն բանուորներ կարենան գործ գտնել:

╳ Ձերբակալուեցան զօր. Թոժոյի դահլիճին բոլոր անդամները եւ 28 երեւելիներ, իբրեւ պատերազմի ոճրագործ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ նկատի առնելով ձախակողմեան հոսանքներու յուշագիրը, որոշեց քննութիւնը շարունակել վաղը, ուրբաթ : Հաւանական է որ կարգ մը բարեփոխումներ կատարուին ընտրական շրջաններու բաշխումին մէջ, յաւելուածական աթոռներ տրամադրելով հոծ բնակչութեանց: Յուշագիրը կը դանգատէր թէ կառավարութեան ծրագրով գիւղացիները կ'օգտուին ի վնաս քաղաքացիներուն:

ԳԵՐՄԱՆԻՈՅ միջդաշնակցային Վերստուգիչ Յանձնաժողովը պահանջեց բոլոր չէզոք երկիրներէն իրենց յանձնել այն գերման պաշտօնատարները եւ նացիները որ ամբաստանուած են իբրեւ ոճրագործ: Հրաւէրը ուղղուած է հետեւեալ պետութեանց:— Սպանիա, Շուէտ, Փորթուկալ, Զուիցերիա, Իրլանտա, Թանճէրի միջազգային շրջան, Վատիկան եւ Աֆղանիստան :

ՉՆԶՈՒԵՑԱՒ անգլիական գրաքննութիւնը Յունաստանի մէջ:

ՆՈՐՎԵԿԻՈՅ նացիները ազդեր փակցնելով պատերուն վրայ, կ'ըսեն թէ «Թագաւորը եւ արքայական գերդաստանին մէկ անդամը պիտի գնդակահարուին, եթէ Քուիսլինկի դէմ տրուած մահավճիռը գործադրուի»:

ՍՈՒՐԻՈՅ կառավարութիւնը 70 տարուան մենաշնորհ մը տուաւ երկու ամերիկեան ընկերութեանց, քարիւղի զտարաններ, նաւարաններ, երկաթուղիներ եւ անթելի կայաններ հաստատելու համար Միջերկրականի ափերուն վրայ:

---

Այրի Տիկին Ս. Փաչաճեան եւ աղջիկը՝ Օր. Մարի - Ֆրանսին, ինչպէս նաեւ Փաչաճեան եւ Մախոխեան եւ Paillet ընտանիքները խորունկ ցաւով կը ծանուցանեն դառնաղէտ մահը իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ ազգականին՝

Պ. ԱՐԱՄ ՓԱՉԱՃԵԱՆի (Ատամնաբոյժ)

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի վաղը, Ուրբաթ, 14 Սեպտեմբեր, ժամը 2ին, Հայոց եկեղեցին, Ժան Կուժոն թիւ 15:

ԾԱՆՕԹ.— Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել :

---

Կ'ՈՒԶՈՒԻՆ Lingèreներ, որոնք Point de Paris, Bordé գիտնան: Դիմել Միքայէլեանի, 1 Rue Marcelin Berthelot, Vanves, Métro Porte de Versailles:

---

# ԹՐՔԱՀԱՅ ԴԱՏԻՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

ՄԱՐՍԷՅԼ, 9 Սեպտ.— Այս առտու ժամը 9.45ին, Roxy սինէմային մէջ տեղի ունեցաւ հրապարակային ժողով մը ուր խօսեցան Հայաստանէն վերադարձող պատուիրակները: Առաջին բանախօսը, Պ. Ասատուրեան, թուանշաններով ներկայացուց մեր հայրենիքի վերելքը տնտեսական, մշակութային եւ այլ մարզերուն մէջ՝ վերջին 25 տարիներուն ընթացքին: Երկրորդ բանախօսը, Պ. Մալումեան խօսեցաւ մասնաւորաբար Հայաստանի մարզական կեանքի մասին, թուելով խրախուսիչ օրինակներ: Երրորդ բանախօսն էր Պ. Լ. Զորմիսեան, որ պատմելով իր տպաւորութիւնները Հայաստանէն, ըսաւ թէ Հայը աշխարհի ամէնէն շինարար տարրերէն մէկն է: Վկայ այն մեծ յառաջդիմութիւնները որոնք կատարուած են մեր երկրին մէջ, կեանքի բոլոր ասպարէզներուն վրայ: Ապա ծանրանալով Հայկ. Դատին վրայ, շեշտեց անոր արդար բնոյթը եւ դրական լուծում մը տալու անհրաժեշտութիւնը: Առանց Հայաստանի հողերու ընդարձակման, արտասահմանի Տաճկահայութեան մնացորդները դատապարտուած են կորսուելու: Որով՝ ամէնէն շատ, արտասահմանի Հայերն են որ պիտի արծարծեն եւ տէր կանգնին իրենց Դատին՝ մէկ սիրտ, մէկ հոգի, պիտի ձգտին զայն իրականացնելու: Այս տեսակէտը արժանացաւ բոլորին հաւանութեան :

Հայկ. Դատի Մարսէյլի Յանձնախումբին կողմէ խօսք տրուեցաւ Պ. Վ. Սահաթճեանի որ քանի մը բառով տեղեկութիւն տուաւ իրենց կատարած աշխատանքներու մասին, իր կարգին, շեշտելով համերաշխութեան եւ միակամ գործելու անհրաժեշտութիւնը: Ապա, Հ. Ա. Ը. Մ. քարտուղարը՝ Պ. Թ. Խաչիկեան կարդաց Հայաստանի վերելքին եւ Հայկ. Դատին վերաբերող բանաձեւ մը որ ներկաներու հաւանութեան արժանացաւ երկար ծափերով: Մէջ ընդ մէջ, եղան երգ եւ արտասանութիւններ, եւ, օրուան նախագահը՝ Պ. Կ. Քիւրէճեան քանի մը խօսքով փակեց ժողովը:

Թղթակից

ԼԱՆՍԷՅ,10 Սեպտ.— Սեպտեմբեր 8ին Ազգ. Միութեան մասնաճիւղը, հրապարակային ժողովի մը հրաւիրած էր գաղութը որ կը բաղկանայ 26 ընտանիքէ: Այս առթիւ հրաւիրուած էին Լիոնի Շրջ. Վարչութեան անդամ Պ. Ս. Պաղտասարեան եւ Տապանեան՝ Կրընոպլէն : Առաջինը գեղեցկօրէն բացատրեց մեր Դատին հանգամանքը եւ յայտարարեց.

— «Մենք չենք մուրար, այլ կը պահանջենք քաղաքակիրթ աշխարհէն, որոնք կռուեցան ազգերու ազատագրման համար, մեր ազգին դարերէ ի վեր թափած արեան գինը, մենք կը պահանջենք ոչ թէ Կարսն ու Արտահանը, որոնք կը նկատենք մերը, այլ նախագահ Ուիլսընի գծած Հայաստանը զոր հանդիսաւոր կերպով ճանչցած են մեծ պետութիւնները եւ որ Թուրքը չէ վերադարձուցած մինչեւ այսօր»:

Ներկաները խանդավառութեամբ եւ վճռականութեամբ խոստացան տանիլ ամէն զոհողութիւն եւ աշխատանք, համերաշխ եւ եղբայրօրէն, որպէսզի մեր դարաւոր երազն իրականանայ եւ մեր անջատ հայրենիքները միանան:

Ներկաներու միաձայնութեամբ ընտրուեցաւ Թրքահայ Դատի պաշտպանութեան Յանձնախումբ մը հետեւեալ անդամներէ.— Նախ. Ս. Ամարեան, քարտ. Ա. Օհանեան, գանձ. Խ. Խանէտանեան եւ խորհրդականներ Յ. Տէրտէրեան, Վ. Յարութիւնեան, Պ. Ունանեան եւ Մ. Նազարէթեան:

Դիւան

ՍԷՆ ՄՕՐԻՍ ՏԸ ՊԷՅՆՈՅԻ Հայերը կը հրաւիրուին արտակարգ ժողովի մը՝ Սեպտ. 15ին, իրիկուան ժամը 8ին Քաֆէ Վինուայի մէջ (Ավընիւ տէ գ'Իլ): Պիտի խօսի Պ. Յովսէփ Տէյիրմէնճեան, Ազգ. Միութեան եւ Թրքահայ Դատի մասին:

---

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Այրի Տիկին Տիրուհի Տէտոյեան եւ զաւակները, Այրի Տիկին Սրբուհի Տէտոյեան եւ բոլոր ազգականները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ կամ գրաւոր եւ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն եւ ազգականին՝ ԶԱՒԷՆ ՏԷՏՈՅԵԱՆի կսկծալի մահուան առթիւ: (Իսի լէ Մուլինօ):

---

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ Գառնիկ Կէօզալեանը՝ Աշտարակ Փարպեցի որ Ֆրանսայի քաղաքներէն մէկուն մէջ կը բնակէր: Լուր ունեցողներէն կամ զինքը ճանչցողներէն կը խնդրուի իմացնել հետեւեալ հասցէին. T. Gueuzalian, 524 Chemin de Mazargue, St. Anne, Marseille: (ԽՄԲ.— Եթէ ուսուցիչ Գառնիկ Գիւզալեանն է, կը գտնուի Պէյրութ):

---

ՅԱՌԱՋ ԿԸ ՆՈՒԻՐԵՆ.— Ժանթիյիէն Պ. Ներսէս Պարսամեան եռամսեայ «Յառաջ» կը նուիրէ Պ. Լեւոն Պէրպէրեանի, Լառիւտէ :

---

Imprimerie DER-AGOPIAN, 17, Rue Damesme - 13e
Le Gérant : H. AGONEYAN

# ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԺՈՂՈՎ ԹՐՔԱՀԱՅ ԴԱՏԻՆ ՀԱՄԱՐ

(Բ. եւ վերջին մաս)

Միջնաբարէն վերջ խօսք առաւ Ազգ. Միութեան կողմէ Հայաստան գացող պատգամաւորներէն Պ. Մ. Աստուրեան, որ Հայաստանի կառավարութեան եւ ժողովուրդի ողջոյնները հաղորդելով Փարիզահայութեան, տուաւ իր տպաւորութիւնները Խորհրդային Հայաստանէն: Բաղդատականն ըրաւ Հայաստանի 1920էն առաջ ունեցած վիճակին եւ այսօրուանին միջեւ: Այսօր Հայաստան գիւղատնտեսական եւ ճարտարարուեստական առաջնակարգ երկիր դարձած է: Պարզ արօրին տեղ թրաքթէօրը (մեքենաշարժ արօր) կը բանի, ջրանցքներ բացուած են եւ ոռոգումները աւելցուցած են արտադրութիւնը: Պատերազմի ընթացքին Հայաստանի ժողովուրդը եռապատիկ աւելի հաց, կարագ եւ միս կը ստանար քան Ֆրանսայի ժողովուրդը, շնորհիւ գիւղատնտեսութեան զարգացման: 1920էն առաջ ճարտարարուեստի երկու ձեռնարկներ կային, որոնցմէ քոնեաքի գործարանը ռուսական, Ալլահվէրտիի պղնձահանքերն ալ ֆրանս. ընկերութիւն մը կը շահագործէին: Իսկ այսօր 43 ճարտարարուեստական ձեռնարկներ կան հոն, ձգախէժի (քաուչու) քիլօն կ'արտադրուի 4 կոպէկի: Ներկայ պատերազմի ընթացքին 35 նոր գործարաններ շինուած են, որոնք պատերազմի ընթացքին ռազմանիւթի արտադրութեան յատկացուած էին, բայց այսուհետեւ օգտակար արդիւնաբերութեանց պիտի գործածուին: Յիշեց ալիւմինիոմի գործարանը, որուն վրայ 13 միլիառ ռուբլի պիտի ծախսուի, Քանաքեռի բարձունքին վրայ, Նոր Արաբկիրի մօտ: Գերման գերի ճարտարագէտներ սկսած են շինել զայն: Երկրորդը՝ օդանաւային գործարանն է, որ արդէն շատ մը օդանաւեր արտադրած է: Ունինք նաեւ օդանաւորդներ, որոնցմէ Պունազեան 27 գերման օդանաւ վար առած, յետոյ շոգեկառքի արկածի զոհ գացած է:

Մշակոյթի մարզին մէջ եւս Հայաստան զարգացած է, ունի 154 մանկապարտէզ, 1134 դպրոց, աւելի քան 200.000 աշակերտ եւ 11766 ուսուցիչ, բացի 11 բարձրագոյն վարժարաններէ: Ուսուցիչն ու մտաւորականը մեծապէս կը գնահատուին այնտեղ եւ ղեկավար դեր կը խաղան կառավարութեան մէջ: Բարձրագոյն վարժարանները տուած են 10.000 մասնագէտներ: Անդրկովկասի ամէնէն բարձր գիւղատնտեսական վարժարանը կը գտնուի Երեւանի մէջ, ուր աշակերտներ կուգան Վրաստանէն ու Ազրպէջանէն: Հայերէնը պարտադիր է բոլոր հայ վարժարաններուն մէջ, ուր յաճախող փոքրամասնութիւններն ալ կը սորվին հայ լեզուն, ինչպէս Քիւրտերն ու Թուրքերը: Յիշեց հայ գիտնականները, ակադեմականները, երաժիշտները, երգիչները, որոնք գնահատուած են ամբողջ Խորհրդ. Միութեան մէջ: Հայաստանի մէջ կան 1882 գրադարան, 4 միլիոն գիրքերով, իսկ ամէն տուն իր սեփական գրադարանն ունի: Րաֆֆիի գործերը երբ հրատարակուեցան՝ ժողովուրդը պոչ կապած էր տուտուն կանուխէն եւ քանի մը ժամուան մէջ սպառեցան: Փոխան 35 բժիշկի այսօր աւելի քան 1000 բժիշկներ կը գործեն Հայաստանի մէջ, մեծամասնութեամբ կիներ՝ շրջանաւարտ Հայաստանի համալսարանէն: Խորհրդային Հայաստանի ժողովուրդը ազատ է զարգացնելու իր մշակոյթը: Սահմաններու ընդարձակման հոգը աւելի շատ կը զբաղեցնէ Հայաստանի ժողովուրդը, եւ աւելի բազմամարդ հաւաքոյթներ կը գումարեն՝ պահանջելու համար Թրքահայաստանի նահանգներուն միացումը ներկայ Հայաստանին:

Ներգաղթի համար շատ կը մտածէ Խ. կառավարութիւնը: Առաջին հերթին Հայաստան պիտի առնուին Յունաստանի, Սուրիոյ եւ Իրանի Հայերը, որոնք նուազ բարեկեցիկ վիճակ կը ներկայացնեն: Հայ ժողովուրդը կրօնասէր է, աւանդութիւնները կը պահէ, կառավարութեան հետ է: Հայաստան արտաքին գործավար ունի եւ շուտով արտասահմանի մէջ ներկայացուցիչներ ալ պիտի ունենայ: «Հայմաթլըս»ներու հարցն ալ պիտի լուծուի, մէկ մասը Հայաստան ներգաղթելով, միւս մասն ալ Հայաստանի կառավարութեան պաշտպանութիւնը վայելելով:

Ժողովին փակումէն առաջ կարդացուեցաւ բանաձեւ մը, որ իբրեւ ողջոյնի հեռագիր պիտի ղրկուի Հայաստանի կառավարութեան: Բանաձեւը իր խնդակցութիւնը յայտնելով Հայաստանի կատարած նուաճումներուն համար, յոյս կը յայտնէ թէ շուտով պիտի իրականանայ Հայաստանի սահմաններու ընդարձակումը, պատմական հողամասերու միացումով: Նոյն յոյսը յայտնեց նախագահը իր փակման խօսքին մէջ:

ՇՐՋՈՒՆ ԹՂԹԱԿԻՑ

Օր. ԱԼԻՍ ՃԻՆՃԵԱՆ եւ ՎԱՐՈՒԺԱՆ ՊԱՐՍԱՄԵԱՆ, նշանուած: 15 Սեպտ. 1945

## Փարիզի Ազգ. Տունը

ԽՄԲ.— Ազգ. Տան Յանձնախումբէն ստացած ենք հետեւեալ զեկոյցը, հրատարակութեան խնդրանքով.—

Փարիզի Հայ Ազգային Տան գնման ու յարդարման ծախքերուն համար բացուած հանգանակութիւնը կը շարունակուի մեծ թափով, հայ գաղութին բոլոր խաւերուն մէջ գտնելով ջերմ վերաբերում: Արդէն հինգ միլիոն ֆրանքի գումար մը ապահովուած է, շնորհիւ այն դիմումներուն զոր կը կատարէ Ազգ. Տան Յանձնախումբը, որ, ինչպէս յայտնի է, կազմուեցաւ Փարիզի Հայ եկեղեցւոյ վարչութեան եւ Հայ Ազգ. Ընդհ. Միութեան վարչութեան ներկայացուցիչներով: Դեռ կը մնայ երեք միլիոն ֆրանք զոր պէտք է հաւաքել մինչեւ Հոկտեմբեր 1:

Հայ Ազգ. Տան Յանձնախումբը մեր մամուլի միջոցով հրապարակաւ կոչ կ'ուղղէ Փարիզի բոլոր Հայերուն, ու նոյնիսկ Ֆրանսայի բովանդակ հայ գաղութին,— վասնզի Ազգային Տունը Ֆրանսահայ գաղութի ազգապահպանման էական գործին կարեւոր ծառայութիւն մատուցանող հաստատութիւն մը պիտի ըլլայ,— եւ կը խնդրէ մեր Ֆրանսաբնակ բոլոր գիտակից հայրենակիցներէն, որ առանց սպասելու իւրաքանչիւր անհատի մօտ դիմում կատարելուն՝ իրենք իսկ հաճին իրենց մասնակցութիւնը փութացնել այս ազգօգուտ ձեռնարկին:

Այդ մասնակցութիւնը կարելի է բերել երկու ձեւով, կամ այդ նպատակին համար գումար մը նուիրելով Փարիզի Հայոց եկեղեցիին, եւ կամ գնելով ինչքան որ կը փափաքին, «Հայ Ազգային Տան Բաժնետիրական Ընկերութեան» բաժնեթուղթերէն զոր Յանձնախումբը հրապարակ հանած է եւ որոնց իւրաքանչիւրը կ'արժէ հազար ֆրանք:

Փարիզի Հայ եկեղեցիին այս նպատակով գումար մը նուիրող մեր հայրենակիցներուն ինչպէս եւ որոշ թիւով բաժնեթուղթեր գնողներուն անունները մամուլին մէջ պիտի հրատարակուին:

Մասնակցիլ ցանկացող մեր հայրենակիցները կրնան դիմել հետեւեալ հասցէներուն.— Հայ Ազգային Տան Յանձնախմբի նախագահ Պ. Երուանդ Պարկիրճեանին 52 Rue Lafayette, Հայ Ազգ. Ընդհ. Միութեան գրասենեակին, 9 Place de la Madeleine, Հայ Ազգ. Տան Յանձնախմբի գանձապահ Վ. Թօսունեանին 164 Rue du Fbg. St. Honoré, Հայ Ազգ. Տան Յանձնախմբի քարտուղար Պ. Հրաչ Սարգիսեանին 261 Rue du Fbg. St. Martin, Փարիզի Հայ եկեղեցիի քարտուղարութեան, 15 Rue Jean Goujon եւ Հայ Ազգ. Տան Յանձնախմբի հետեւեալ անդամներուն, Պ. Կարապետ Յակոբեան 10 Rue du Caire, Պ. Յ. Գարակիւլեան 65bis Rue de Romainville, Պ. Մաքս Ճերմակեան, 35 Rue de la Boétie, Պ. Վահէ Զիլինկիրեան 24 Rue Feydeau, Պ. Պ. Պոտոսեան 48 Rue de la Chine:

Հեռաձայնի հասցէ.— Tossounian ELY. 77-60, Bargherdjian TAI. 55-88:

— «Տանջուած կալանաւորները կը պատկանէին տասը տարբեր ազգութեանց: Մեծն Բրիտանիա ստանձնած է այս դատավարութեան պատասխանատուութիւնը, որովհետեւ բոլորովին անկարելի է ատեան մը կազմել, դատ վարելու համար այս բոլոր ազգերուն կողմէ: Աուշվիցի մէջ կանխամտածութեամբ սպաննուած են հազարաւոր մարդիկ եւ հաւանաբար միլիոններ: Ամբաստանեալներէն իւրաքանչիւրը իր բաժինը ունեցած է կանխամտածութեամբ կատարուած բնաջնջումի այս քաղաքականութեան մէջ: Այս տարուան ապրիլի երկրորդ շաբթուն բրիտանական Բ. բանակին կեդրոնը եկան կարգ մը գերման սպաներ, տեղական զինադուլ մը խնդրելով, որովհետեւ, կ'ըսէին, բծաւոր ժանտատենդ (թիֆիւս) եւ ուրիշ վարակիչ հիւանդութիւններ ծագած են 60.000 կալանաւորներու մէջ, եւ տեղափոխութիւններ պիտի կատարեն, որպէսզի համաճարակները չտարածուին բանակին մէջ: Թիւ 2 տաղաւարին մէջ, որ կիներու յատուկ էր, կային 300 հիւանդներ որոնք նոյն իսկ անջատուած չէին մնացեալներէն: Տասը հոգի թխմած էին տեղի մը մէջ ուր հազիւ մէկ հոգի կրնար տեղաւորուիլ: Սովորական տաղաւարի մը մէջ բաւական տեղ կար քսան հոգիի համար, բայց 600էն մինչեւ հազար հոգի թխմած էին: Տաղաւարներուն մէջ ողջը, մահամերձը եւ մեռելը բոլորը միասին էին: Արգելարանին շուրջը կային մինչեւ 13000 անթաղ դիակներ: Անգլիացիներուն գալէն քանի մը օր առաջ 2000 հոգի դիակներ կը քաշքշէին օրական 12 ժամ եւ կը թաղէին լայն փոսերու մէջ: Երբ Անգլիացիները հասան, տակաւին 13.000 մեռեալներ կային: Աներեւակայելի վիճակ ունէին դիակները: Այնքան նիհար էին որ կին մը կրնար փոխադրել զանոնք: Արտաքնոցներ չկային: Կալանաւորները իրենց տաղաւարներուն մէջ կը փակուէին գիշերը, չէին կրնար քնանալ եւ ստիպուած էին նստիլ իրարու վրայ խռնուած: 12.000 այրերէն 2242ը ծանրապէս հիւանդ էին եւ 7000ը դարմանի կը կարօտէին: 28.185 կիներէն 2000ը ծանր հիւանդ էին եւ 18 հազարը բժշկական խնամքի կը կարօտէին: Ամէն օր 125 նոր հիւանդներ կ'աւելնային: Բացի 13.000 դիակներէն որ փռուած էին այնտեղ, յաջորդ վեց շաբաթներու ընթացքին, հակառակ ամէն խնամքի, 13 հազար հոգի եւս մեռան: Ասկէ զատ, վեց շաբաթ վերջը, 11 հազար հոգի կը գտնուէին հիւանդանոցի մէջ: Մահուան պատճառներն էին անօթութիւն, ծարաւ եւ խոշտանգում: Մինչեւ մահ ծեծելով, դնդակահարելով կամ անօթի ձգելով կը մեռցնէին»: (Շար.)

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄԱՀՈՒԱՆ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԵՑԱՒ Ժան Հէրոլտ Փաքի, Ռատիօ - Փարիի քարոզիչը, որ ամէն օր կ'ազդարարէր թէ «Անգլիան պիտի կործանի ինչպէս Կարքեդոնը»: Փաստերը այնքան անվիճելի էին որ գործը վերջացաւ մէկ դատավարութեամբ: Դատարան բերուած էին իր խօսած ճառերուն ձայնապնակները (տիսք), եւ Փաքի կը լսէր իր ձայնը,— «Գերման բանակը երբեք պիտի չպարտուի»: Պաշտպան փաստաբանը ի զուր ջանաց մեղմացուցիչ պարագաներ արժեցնել, ըսելով թէ անշահախնդիր էր ան: Ընդհ. դատախազը հասարակ ոճրագործ մը կը նկատէր ամբաստանեալը եւ ոչ թէ քաղաքական յանցաւոր: Երբ Փաքի ըսաւ թէ անկեղծօրէն կը հաւատար Գերմանիոյ յաղթանակին եւ կը գործակցէր առանց դրամի, դատաւորը պոռաց թէ ամիսը 30.000 ֆրանք կը ստանար: Փաքի պատասխանեց,— «Մոսիւ Շըվալիէ, մէկ գիշերուան մէջ կը շահի այդ գումարը»:

ԱՆՏՈՒԷ ԹԱՌՏԻԷՕ, նախկին վարչապետ եւ Քլէմանսոյի աշխատակիցը, որ միեւնոյն ատեն հրապարակագիր էր, մեռաւ առջի օր: Վեց տարիէ ի վեր անկողին գամուած էր անբուժելի հիւանդութեամբ: 69 տարեկան էր, եւ տխուր պատմութիւն մը կը ձգէ իր ետին:

ՊՈՒԼԿԱՐԻՈՅ հրաժարեալ նախարարներէն Զէմէճիէվ, ընդդիմադիր հոսանքին գլխաւոր վարիչներէն մէկը, սպաննուած է խորհրդաւոր պարագաներու մէջ, համաձայն Անգարա հասած լուրերու:

ՃԱՓՈՆԻ գրաւման համար 200.000 զինուորը բաւական պիտի ըլլայ մինչեւ վեց ամիս, յայտարարեց Զօր. Մէք Արթըր: Միւս զինուորները պիտի արձակուին հետզհետէ:

ՁԱՆԳՈՒԱԾԱՅԻՆ գործադուլներ իրարու կը յաջորդեն Մ. Նահանգներուն մէջ: Ֆորտի հաստատութիւնը փակած է բոլոր գործարանները, փողոց թափելով 200.000 բանուորներ: Նախագահ Թրումըն կը ջանայ ելք մը գտնել:

ՀՈԿՏ. 21Ի ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ծախքերը ստանձնած է կառավարութիւնը (թուղթ ազդերու համար, տպագրութիւն, քուէթուղթ, առաքման ծախքեր եւն.): Առաջին անգամ է որ պետութիւնը կը ստանձնէ ընտրական պայքարի ծախքերը որոնք առ նուազն 50.000 ֆրանք պիտի ըլլան իւրաքանչիւր թեկնածուի համար: Ջեղծումները կանխելու համար, իւրաքանչիւր թեկնածու 20.000 ֆրանք պիտի վճարէ իբրեւ երաշխաւորութիւն եւ պիտի կորսնցնէ այդ գումարը, եթէ չէ շահած քուէներու առ նուազն 5 առ հարիւրը: Անգլիոյ մէջ ալ թեկնածուները գումար մը կը վճարեն, բայց պետութիւնը չստանձներ ծախքերը:

ՈՒԹ ՄԻԼԻՈՆ տեղահան Գերմաններ անցած են Պերլինէն եւ ամէն օր 2000 հոգի կ'անցնի: Դաշնակիցները կը հաշուեն թէ համագումար 14 միլիոն Գերմաններ այսպէս պիտի անցնին մայրաքաղաքէն, արեւելքէն արեւմուտք գաղթելով: Անօթութիւնը եւ հիւանդութիւնները կը ճարակին այս միլիոնաւոր բազմութեանց մէջ:

ՈՒՏԵՍՏԻ ԳԻՆԵՐԸ պիտի պահուին, հացը ազատօրէն պիտի ծախուի այս ձմեռ, ճարպեղէնի բաժինը պիտի աւելնայ եւ քիչ մը տաքութիւն պիտի ունենանք,— համաձայն ելմտական նախարարին յայտարարութեան:

ՍԱՓՐԻՉՆԵՐԸ գործադուլ պիտի հռչակեն այսօր, չորեքշաբթի, բողոքելու համար նոր տուրքերուն դէմ: Բանուոր - սափրիչներն ալ յաւելում կը պահանջեն:

ՍՈՒՐԻՈՅ խորհրդարանը աղմկալի նիստ մը ունեցաւ առջի օր, երբ արտաքին նախարարը յայտարարեց թէ կառավարական վերջին տագնապը հետեւանք էր օտարին կողմէ վճարուած գործակալներու դաւադրութեան:



ՄԱՐՍԷՅԼԷՆ Պ. Գէորգ Պօյաճեան եռամսեայ Յառաջ կը նուիրէ իր աներոջ, Պ. Տէօլէնեանի:

Imprimerie DER-AGOPIAN, 17, Rue Damesme - 13e
Le Gérant : H. AGONEYAN

